Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 12 ՀՈՒՆԻՍ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս 2—52—78:*






# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԿԵՐ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆԸ

Հանրային անասնաբուծության հետագա զարգացման գործում վճռական նշանակություն ունի առատ կերը: Չի կարելի հասնել անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման, առանց անասունները առատորեն կերակրելու: Միայն այն դեպքում, երբ մեր անասունները կստանան բազմազան ու բարձրորակ կերեր, մեծ չափերով կավելանա անասնաբուծական մթերքների արտադրությունը:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը պահանջեց՝ ընդլայնել կերի արտադրությունը, հանրային անասնաբուծությունն ապահովել առատ և բազմազան կերերով:

Պարտիայի այդ խնդիրը պատվով կատարելու համար խոշոր նշանակություն ունի խոտհունձը և կերի սիլոսացումը հաջողությամբ կատարելը:

Արդեն մեր ռեսպուբլիկայի ցածրադիր վայրերում սկսվել է խոտհունձը, այն շու-

տով կսկսվի նաև ռեսպուբլիկայի նախալեռնային և լեռնային շրջաններում։

Այս գյուղատնտեսական տարում նախատեսված է կոլտնտեսություններում և սովխոզներում կուտակել ավելի շատ կերեր, քան այն կուտակվում էր նախորդ տարիներին։ Դա մեծ ջանքեր պահանջող աշխատանք է և այն պետք է կատարել ժամանակին ու բարձր կազմակերպվածությամբ։

Խոտհունձը և կերի սիլոսացումը հաջողությամբ անցկացնելու գործում մեծ անելիքներ ունեն մեքենա-տրակտորային կայանները։ Մեքենա-տրակտորային կայանները սոցիալիստական գյուղատնտեսության նյութական-տեխնիկական հզոր բազաներն են։ Պարտիան և կառավարությունը գյուղատնտեսության հետագա զարգացման համար ոչինչ չեն խնայում։ Մեր մեքենա-տրակտորային կայանները հագեցված են ժամանակակից և բարձր զարգացման հասած սովետական գյուղատնտեսական մեքենաներով։ Այնտեղ աշխատում են բազմահազար և որակյալ մեխանիզատորական կադրեր։ Հետևաբար մեքենա-տրակտորային կայաններն ունեն լայն հնարավորություն խոտհունձը և կերի սիլոսացումը հաջողությամբ անցկացնելու համար։ Հարկավոր է լրիվ կարողու-



թյամբ և արդյունավետ կերպով օգտագործել բոլոր մեքենաներն ու մեխանիզմները։ Այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, ավելի շատ կմեքենայացվեն խոտհնձի և կերի սիլոսացման աշխատատար պրոցեսները։ Դա հնարավորություն կտա կերի կուտակման աշխատանքները ավարտել սեղմ ժամկետներում, արագ և բարձր որակով։

Մեր կոլտնտեսականները, սովխոզների ու մեքենա-տրակտորային կայանների աշխատողները անձնական փորձով գիտեն, որ գյուղատնտեսական մյուս կուլտուրաների մշակության համար առավել բարենպաստ պայմաններ է ստեղծվում միայն այն ժամանակ, երբ խոտհնձի կամպանիան ավարտվում է մինչև հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի սկսվելը։ Հետևաբար խոտհունձը պետք է ավարտել մինչև հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի սկսվելը։ Դա հնարավորություն կտա գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողներին ոչ միայն շատ կեր կուտակել, այլև հանրային անասնաբուծությունն ապահովել որակյալ կերով, լիարժեք խոտով։

Օրերս ՀԿՊ Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետը քննության առնե-

լով ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում
խոտհունձը և կերի սիլոսացումը նախա-
պատրաստելու և անցկացնելու հարցը, նշե-
ցին, որ բամբակացան և մի քանի այլ շրջան-
ների կոլտնտեսություններում, անբավարար
ղեկավարման հետևանքով, թույլ է տրվում
խոտի հավաքման ու փոխադրման ժամկետի
ձգձգում, որը կարող է հանգեցնել նրա բերքի
զգալի կրճատմանը և որակի իջեցմանը։

Որպեսզի խոտի կորուստ տեղի չունենա,
խիստ անհրաժեշտ է ճշտորեն կատարել
խոտհնձի և կերի սիլոսացման օրացուցա-
յին պլանները։ Խնդիրն այն է, որ ոչ մի
խզում առաջ չգա խոտհնձի, խոտի չորաց-
ման, խոտի փոխադրման և դիզման միջև։
Այդ է պատճառը, որ մեր շատ առաջավոր
կոլտնտեսություններ այժմվանից պայքա-
րում են, որպեսզի խոտհնձի աշխատանք-
ների հետ միասին կատարեն նաև խոտի
չորացման և տեղափոխման աշխատանքնե-
րը։ Դաշտում կուտակված խոտը ժամանա-
կին տեղափոխեն և դիզեն ֆերմաներում,
իսկ այնուհետև խնամքով պահպանեն այն։

Այս օրերին մեր ագիտատորները պետք է
ամենայն մանրամասնությամբ կոլտնտեսա-
կաններին և մեքենա-տրակտորային կայան-



ների մեխանիզատորներին պարզաբանեն
խոտհնձի հավաքման և կերի սիլոսացման
պլանները։ Յուրաքանչյուր կոլտնտեսական
պետք է հստակ պատկերացում ունենա, թե
իրենց կոլտնտեսությունը, բրիգադան և ան-
ձամբ ինքն ինչ է անելու խոտհնձի օրերին։

Շատ կարևոր է, որ խոտհնձի ընթացքում
ագիտատորները պարբերաբար մասսայա-
կանացնեն մրցության առաջավորների աշ-
խատանքի դրական փորձը, օգնեն ետ մնա-
ցողներին՝ առաջավորներին հասնելու,
ստանձնած պարտավորությունները լրիվին
կատարելու համար։ Ագիտացիոն զրույցնե-
րի, ինֆորմացիաների և ցուցադրական ագիտա-
ցիայի միջոցով ամեն կերպ պաշտպանել ու
խրախուսել այն առաջավորներին, որոնք
խոտհնձի ժամանակ կատարում և գերակա-
տարում են արտադրական նորմաները։

Անասունների մթերատվության բարձրաց-
ման գործում խոշոր նշանակություն ունի
սիլոսը, որպես սննդարար և հյութալի կեր։
Ռեսպուբլիկայում լուրջ աշխատանք է կա-
տարված եգիպտացորենի ցանքային տարա-
ծությունների ընդարձակելու համար։ Այդ
թանկարժեք կուլտուրան անասնաբուծու-
թյան վերելքի անսպառ հնարավորություն-
ներ ունի, որովհետև նա միաժամանակ լու-

ծում է երկու խնդիր՝ հացահատիկի ռեսուրսների համալրումը և լավ սիլոսի ստացումը եգիպտացորենի ցողուններից։

Մեր ագիտատորները մասսայական խրախուսանքի պետք է արժանացնեն սիլոսի պատրաստման գործում աչքի ընկնող աշխատողներին, ընդհանրացնեն և տարածեն նրանց փորձը։ Զրույցների ընթացքում ցույց տան, թե աշխատանքի առաջավորներն ինչպես են կարողանում լրիվ բեռնվածությամբ աշխատացնել բոլոր սիլոսահատ մեքենաները, թե ինչպես են նրանք կարողանում պատրաստել բարձրորակ սիլոս։ Առաջին հերթին պետք է տարածել գյուղատնտեսության այն առաջավորների փորձը, որոնք կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումը, ընդօրինակելի աշխատանք են կատարում կերի արտադրության կոմպլեքսային մեքենայացման գործում։

Խոտհնձի և սիլոսացման աշխատանքների ընթացքում ագիտատորների ուշադրության կենտրոնում պետք է լինի կորուստների դեմ խելացի ու մտածված պայքար կազմակերպելը։ Զրույցների ընթացքում հարկավոր է կոլտնտեսականներին և սովխոզների ու մեքենա-տրակտորային կայանների աշխատող-



ներին կոնկրետ օրինակներով ցույց տալ, որ խոտհնձի և սիլոսացման գործում առաջնակարգ նշանակություն ունի ժամանակի գործոնը։ Ժամանակին հնձած խոտը քանակով լինում է շատ և որակով լավ։ Նույնը կարելի է ասել սիլոսի մասին։

Խոտհունձը ժամանակին ավարտելու գործում կարևոր նշանակություն ունի կանանց ակտիվ մասնակցությունը այդ աշխատանքներին։ Կանայք կոլտնտեսային գյուղում վաղուց մեծ ուժ են դարձել։ Վճռականորեն պետք է բարելավել կոլտնտեսություններին և սովխոզներին կից գործող մանկամսուրների և մանկապարտեզների աշխատանքը։ Այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կգործեն հարյուրավոր սեզոնային մանկամսուրներ և մանկապարտեզներ։

Անշեղորեն կենսագործելով անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը, ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորությունը պատվով կկատարի ստանձնած պարտավորությունները և բարձր կազմակերպվածությամբ կավարտի խոտհնձի և սիլոսացման աշխատանքները, հանրային անասնաբուծությունը կապահովի առատ և բազմազան կերերով։

---

# ՋՐՈՒՅՑ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻ ՀԻԲՐԻԴԱՅԻՆ ՍԵՐՄԵՐ ՍՏԱՆԱԼՈՒ ՄԱՍԻՆ

Պրոֆ. Գ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

*Այժմ, երբ մեր երկրում հատիկի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ ծավալվել են մեծ աշխատանքներ, շատ կարևոր է գործի դնել եգիպտացորենի բերքատվության բարձրացման բոլոր հնարավորությունները։ Այդ թանկարժեք կուլտուրայի բերքատվության բարձրացման գործում կարևոր տեղ է գրավում սերմերի հիբրիդացումը, հիբրիդացված սերմերով ցանք կատարելը։*

*Գիտահետազոտական տվյալներով և արտադրական փորձով անհերքելիորեն ապացուցված է, որ հիբրիդային սերմերը, սովորական ոչ հիբրիդային սերմերի համեմատությամբ, ապահովում են եգիպտացորենի հատիկի անհամեմատ ավելի բարձր բերք։ Այդ տարբերությունը լինում է միջին հաշվով*



*15—20, իսկ որոշ դեպքերում՝ մինչև 50 և ավելի տոկոս։*

*Հաստատված է, որ ՍՍՌՄ-ում բոլոր դեպքերում ռեկորդային բերք ստացվել է հիբրիդային սերմերով ցանած հողամասերից։ Մարկ Օզյորնին, Ստեպանիդա Վիշտակը, Մարիա Գաբովդան և եգիպտացորենի ռեկորդային բերք ստացող բազմաթիվ այլ անվանի մարդիկ ցանել են բացառապես հիբրիդային սերմեր և հեկտարից ստացել 100—200 ցենտներ եգիպտացորենի կողրերի բերք։ Եթե ընդունենք, որ հիբրիդային սերմերով կատարված եգիպտացորենի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից միջինը ստացվում է 6—8 ցենտներ հատիկի լրացուցիչ բերք, ապա մեր երկրի մասշտաբով դա կկազմի մոտ 200 միլիոն ցենտներ հատիկ (կողրերով)։*

*Այստեղից էլ դժվար չի համոզվել, որ եգիպտացորենի հիբրիդային սերմերով կատարվող ցանքատարածությունների ընդարձակումը խոշոր ժողովրդա-տնտեսական նշանակություն ունեցող խնդիր է։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումներում խնդիր է դրվում մոտակա 2—3 տարիների ընթացքում*

եգիպտացորենի ցանքերը կատարել բացառապես հիբրիդային սերմերով։

Հիբրիդային կոչվում են այն սերմերը, որոնք ստացվում են տարբեր տարատեսակների կամ տեսակների բույսերի տրամախաչումից։ Այդպիսի բույսերը տարբերվում են իրենց ծնողական ձևերից աճի հզորությամբ, հիվանդություններին և այլ անբարենպաստ պայմաններին ավելի լավ դիմադրելու հատկությամբ, բարձր բերքատվությամբ և հատիկի բարձր որակով։

Երբ եգիպտացորենը բեղմնավորվում է իր փոշիով, ստացվում են սովորական սերմեր։ Եգիպտացորենը գոյության կռվի հազարամյակների ընթացքում ձեռք է բերել մի հարմարություն, որը դժվարացնում է ինքնափոշոտումը և խոշոր նշանակություն ունի ավելի կենսունակ սերունդ ստանալու գործում։ Այդ հարմարությունն այն է, որ նրա արական և իգական ծաղկաբույլերը (հուրանները) գտնվում են բույսի տարբեր մասերում։ Բացի այդ, արական ծաղկաբույլերը մի քանի օր ավելի շուտ են ծաղկում, քան իգական ծաղկաբույլերը։ Դրա հետևանքով սեփական փոշիով բեղմնավորվելու հնարավորությունը խիստ դժվարացած կամ համարյա ամբողջապես վերացած է։ Բազ-



մաթիվ դիտողություններից և հաշվառումներից պարզվել է, որ սովորական պայմաններում սեփական փոշիով բեղմնավորվում է եգիպտացորենի բույսերի 5 տոկոսից ոչ ավելին, իսկ բույսերի մնացած մասսան բեղմնավորվում է ուրիշ բույսերից բերվող փոշահատիկներով։

Հիբրիդային սերմեր ստանալու համար չպետք է թույլ տալ, որ իգական ծաղիկները բեղմնավորվեն նույն սորտի բույսերի արական փոշահատիկներով։ Այն սորտը, որից հեռացնում են արական ծաղկաբույլերը, կոչվում է մայրական, իսկ այն սորտը, որի փոշահատիկներով բեղմնավորվում են մայրական բույսերի ծաղիկները, կոչվում է հայրական։ Այդ երկու սորտերը միասին կոչվում են ծնողական սորտեր կամ ծնողական ձևեր։

Միանգամայն պարզ ու հասկանալի է, որ ոչ բոլոր ծնողական ձևերը կարող են տալ բարձր բերքատվությամբ օժտված հիբրիդային սերմեր։ Այդ իսկ տեսակետից, նախքան հիբրիդացման աշխատանքին անցնելը, անհրաժեշտ է ընտրել ծնողական այն-

պիսի զույգեր, որոնք ընդունակ են տալու առավել բերքատու սերմեր։

Յուրաքանչյուր կոլտնտեսությունում սերմադաշտերը պետք է առանձնացնել այն հաշվով, որպեսզի առաջին սերնդի հիբրիդային սերմերով հնարավոր լինի ցանել տնտեսության բոլոր արտադրական կամ ապրանքային հողամասերը, ինչպես նաև ստեղծել անհրաժեշտ ապահովագրական ֆոնդ։

Եգիպտացորենի մյուս ցանքերը հիբրիդացիոն դաշտերից պետք է գտնվեն 200 մետրից ոչ պակաս հեռավորության վրա։

Հիբրիդացիոն դաշտում ցանքն այնպես պետք է կատարել, որ հայրական սորտի երկու շարքերը ընդմիջվեն մայրական սորտի երկու շարքերով։ Մայրական բույսերի շարքերը հայրական բույսերի շարքերից հեշտությամբ տարբերելու համար, հայրական բույսերի սերմերին պետք է խառնել ըստ կշռի մոտ 0,5 տոկոս արևածաղկի սերմ։ Նոսրացման ժամանակ արևածաղկի բույսերը պետք է թողնել մեկը մյուսից 15—20 մետր հեռավորության վրա։

Ցանքերի խնամքը, մինչև մայրական բույսերի շարքերում արական հուրանների երևալը, նույնն է, ինչ և բարձր բերքի հողամասե-



րում։ Հողում օդափոխությունն ուժեղացնելու, ջրի գոլորշիացումը պակասեցնելու, մոլախոտերի դեմ պայքարելու և միկրոբիոլոգիական պրոցեսներն ուժեղացնելու նպատակով, պետք է ժամանակին կատարել նոսրացման, փխրեցման և միջշարքային մշակության մյուս աշխատանքները։ Շատ կարևոր է նաև, որ ցանքերը սնուցվեն ու ոռոգվեն ճիշտ ժամանակին։

Սակայն ամենից կարևոր և ամենից պատասխանատու աշխատանքը հիբրիդացիոն դաշտում—դա ժամանակին և մեծ խնամքով մայրական շարքերում բոլոր բույսերի հուրանների հեռացումն է։ Այդ աշխատանքը ուշացնելու կամ նույնիսկ չնչին քանակությամբ մայրական բույսերի վրա հուրաններ թողնելու դեպքում իգական ծաղիկների մի ինչ որ մասը բեղմնավորվում է իր սորտի փոշահատիկով, որից հիբրիդային սերմեր չեն ստացվում։ Այդ կարևոր աշխատանքը ժամանակին կատարելու համար հիբրիդացիոն դաշտում պետք է սահմանել մշտական հսկողություն։ Մայրական բույսերի հուրանները պետք է հեռացնել անմիջապես, երբ նրանք սկսում են երևալ։ Այս աշխատանքը պետք է կրկնել ամեն օր և այնքան անգամ, մինչև լրիվ ավարտվի բոլոր մայրական

*բույսերի հուրանների հեռացումը։ Որոշ պայմաններում այդ աշխատանքը տևում է 10—15 օր։*

*Հուրանները հեռացնելու հետ միասին մայրական բույսերի վրայից պետք է կտրել, հեռացնել նաև բշաընձյուղները, որոնք կարող են տալ արական ծաղկաբույլեր։ Հայրական բույսերի վրայից բշաընձյուղները չպետք է հեռացնել, որովհետև նրանք փոշի են մատակարարում մայրական բույսերի վրա ուշ առաջացող կողրերին։ Այդպիսի կողրերը պետք նաև լրացուցիչ կերպով փոշոտել հայրական ձևի բույսերից հավաքած փոշիով։*

*Հիբրիդացված դաշտում սկզբում պետք է հավաքել մայրական բույսերի հիբրիդային կողրերը և ապա նոր հայրական բույսերի վրա եղած կողրերը։ Մայրական բույսերի գետին ընկած կողրերը պետք է հավաքել առանձին և իբրև սերմացու չօգտագործել։ Հայրական բույսերի կողրերի հավաքը պետք է սկսել այն ժամանակ, երբ մայրական բույսերի կողրերի հավաքը վերջացել է և դաշտից փոխադրվել է տնտեսություն։ Հայրական բույսերից հավաքած կողրերը պետք է օգտագործել միայն արտադրական նպատակներով։*



*Մայրական բույսերից հավաքած կողրերը նույն օրը պետք է փոխադրել լավ օդափոխվող շենք կամ ծածկոցի տակ և իսկույն սկսել ընտրությունը, հեռացնելով բոլոր հիվանդ, թերազարգացած, մանր կողրերը և տարբեր խառնուրդները, որոնք դժվարացնում են չորացումը։*

*Սերմացուի համար թողնված կողրերը հարկավոր է չորացնել և հասցնել մինչև 14 տոկոս խոնավության, որովհետև խոնավ հատիկները արագորեն կորցնում են իրենց ծլունակությունը։ Կողրերը չորացնելուց հետո անհրաժեշտ է ընտրություն կատարել երկրորդ անգամ։ Եգիպտացորենը պետք է պահել կողրերով և չոր շենքերում։*

---

## ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՈՒ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԵՎ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի և Սովետական կառավարության կողմից հրավիրված Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցությունը բազմակողմանիորեն քննարկեց արտադրության մեջ գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումների լայն արմատավորման հիման վրա արդյունաբերության հետագա վերելքի միջոցառումների հարցը։ Խորհրդակցության մասնակիցները հպարտությամբ նշեցին այն հաջողությունները, որոնք ձեռք են բերել Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի հերոսական բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և ինտելիգենցիան։ Նրանք առանձին գոհունակությամբ նշեցին ծանր ինդուստրիայի հաջողությունները,*



*այն, որ ներկայումս ծանր արդյունաբերությունը թողարկում է 3,5 անգամ ավելի արտադրանք, քան 1940 թվականին։ Այժմ մեր երկրում արտադրվում է 2 անգամ ավելի չուգուն, 2,3 անգամ ավելի պողպատ, 2,1 անգամ ավելի ածուխ, 1,9 անգամ ավելի նավթ, գրեթե 3 անգամ ավելի էլեկտրաէներգիա, 4 անգամ ավելի սարքավորում ու մեքենաներ, քան մինչև պատերազմը։ Հասկանալի է, որ միայն ծանր ինդուստրիայի հզոր վերելքը հնարավորություն է տվել ապահովել թեթև արդյունաբերության ու գյուղատնտեսության հետագա զարգացումը, ամրապնդել երկրի պաշտպանունակությունը, հասնել աշխատավորների նյութական բարեկեցության սիստեմատիկ բարձրացման։ Այս տարի կարտադրվի մոտավորապես 80 տոկոսով ավելի շատ արդյունաբերական ապրանք, քան 1950 թվականին և ավելի քան երեք անգամ շատ, քան նախապատերազմյան 1940 թվականին։ Բոլոր նախադրյալները կան, որպեսզի արդյունաբերական արտադրանքի ծավալի ավելացման գծով հինգերորդ հնգամյա պլանը ոչ միայն կատարվի, այլև գերակատարվի։*

*Հաջողությունները մեծ են։ Բայց սովետական մարդիկ չեն կարող բավարարվել*

ձեռք բերածով, թույլ տալ ինքնահանգստացում։ Կոմունիստական պարտիան սովորեցնում է սովետական մարդկանց չհանգստանալ ձեռք բերած հաջողություններով։ Չէ՞ որ մեր առջև կանգնած է պատմական հսկայական կարևորություն ունեցող խնդիր՝ կոմունիստական հասարակարգի կառուցումը, որի իրագործումը պահանջում է անընդհատ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, որը Լենինի բնորոշմամբ, վերջին հաշվով ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակական կարգի հաղթանակի համար։

Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցությունը բացահայտեց աշխատանքում եղած թերությունները և այն հսկայական ռեզերվները, որոնց օգտագործումով կարելի է ապահովել ժողովրդական տնտեսության հետագա շեշտակի վերելքը։

Խորհրդակցությունը, որպես գլխավոր թերություն նշեց, որ լավագույն ձեռնարկությունների և արտադրության նորարարների փորձը, որոնք աշխատանքի կազմակերպման բարձր մակարդակի և տեխնիկայի ճիշտ օգտագործման շնորհիվ հասնում են աշխատանքի բարձր արտադրողականու-



թյան, թույլ է տարածվում և դեռևս չի դառնում արդյունաբերության բոլոր աշխատողների սեփականությունը։ Արդյունաբերության աշխատողների խորհրդակցության մասնակիցների նշած թերությունները բնորոշ են նաև մեր ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունների համար։ Յուրաքանչյուր ագիտատոր լավ գիտե, որ նույնիսկ հետ մնացող ձեռնարկություններում կան շատ առաջավոր բանվորներ, նորարարներ, որոնք հաջողությամբ յուրացնում են տեխնիկան, կատարելագործում իրենց աշխատանքի մեթոդները և հասնում բարձր ցուցանիշների։ Այդ առաջավորների մասին ագիտատորները լավ գիտեն և հաճախ են խոսել իրենց զրույցների ժամանակ։

Մեր ռեսպուբլիկայում հազարավոր բանվորներ արդեն կատարել են իրենց հնգամյա առաջադրանքը։ Արդեն խոսվում է հնգամյակը ժամկետից շուտ կատարած մի քանի գործարանների մասին (Էլեկտրալուսավորման, Խրոմպիկի, Ծխախոտի ֆաբրիկայի և այլն)։

Հինգերորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունը հիանալի արդյունքներ է տալիս Երևանի «Կանագ», Ավտոդողերի, Ալավերդու

պղնձաձուլական գործարաններում, Լենինականի և Կիրովականի առաջավոր արտադրական ձեռնարկություններում։ Սակայն դրանց կողքին կան ձեռնարկություններ, որոնք սիստեմատիկաբար թերակատարում են պետական պլանները։ Ահա Երևանի Փոքր հիդրոտուրբինների գործարանը։ Պետական պլանի թերակատարումը այստեղ սովորական երևույթ է դարձել, գործարանը չի կատարում տուրբինների և պոմպերի թողարկման պլանը, մեծ չափերի են հասնում պարապուրդները։ Բայց չէ՞ որ Փոքր հիդրոտուրբինների գործարանը բոլոր հնարավորություններն ունի, որպեսզի պետական առաջադրանքը կատարի։ Նա հագեցված է առաջնակարգ սարքավորումներով, հիանալի բանվորական կոլեկտիվ կա այստեղ, կան բանվորներ, որոնք իրենց առաջադրանքները կատարում են 200—250 տոկոսով։ Հետ մնացող գործարանների, ցեխերի, բրիգադաների մասին ճիշտ է նշվել Արդյունաբերության աշխատողների խորհրդակցությունում։ Այնտեղ ասել են, որ մենք թույլ ենք ուսումնասիրում և ընդհանրացնում առաջավոր ձեռնարկությունների ու արտադրության նորարարների նվաճումները։ Իսկ չէ՞



որ ագիտատորները շատ բան կարող են անել այդ ուղղությամբ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը բոլոր գործարանների ու ֆաբրիկաների, հանքահորերի ու նորակառույցների համար ստեղծել են տեխնիկա-տնտեսական անհրաժեշտ պայմաններ, այն ամենը, ինչ անհրաժեշտ է պետական պլանի կատարումն ապահովելու համար։ Ամբողջ խնդիրը աշխատանքի ճիշտ կազմակերպման մեջ է, նրանում, թե ինչպես կօգտագործվեն ունեցած հնարավորությունները, ռեզերվները։ Պետք է շարունակ հիշել Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «Ո՛չ երկաթուղիները, ո՛չ տրանսպորտը, ո՛չ խոշոր մեքենաներն ու ձեռնարկություններն ընդհանրապես չեն կարող ճիշտ գործել, եթե չկա կամքի միասնություն, որը շաղկապի բոլոր առկա աշխատավորներին ժամացույցի մեխանիզմի ճշտությամբ գործող տնտեսական մի մարմնի մեջ»։

Յուրաքանչյուր ագիտատոր, եթե նա ուզում է իր աշխատանքը լավ արդյունք տա, եթե նա ուզում է ագիտացիան դարձնել ներգործող, աշխատավորներին մոբիլիզացնող, նա պետք է լավ ուսումնասիրի Արդյունաբերության աշխատողների համամիութե-

նական խորհրդակցությունում ընկերներ Ն. Ս. Խրուշչևի և Ն. Ա. Բուլգանինի ճառերը և խորհրդակցության մյուս նյութերը։ Այդ ուսումնասիրությունից հետո ագիտատորը, իր զրույցի ժամանակ տվյալ արտադրական ձեռնարկության կոնկրետ փաստերի հիման վրա, կարող է պատմել ունկնդիրներին, որ արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորումը հնարավորություն կտա գնալ տեխնիկական պրոգրեսի ուղիով և բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը կախված է ոչ միայն եղած տեխնիկայի քանակից ու մակարդակից, այլև նրա ճիշտ օգտագործումից։ Չի կարելի հանգստանալ նրանով, որ մեր արտադրական ձեռնարկությունը հագեցված է նորագույն սարքավորումներով։

Յուրաքանչյուր ագիտատոր, իր զրույցի ժամանակ, կոնկրետ օրինակներով կարող է ցույց տալ, թե ինչպես սոցիալիստական մրցության առաջամարտիկները հասնում են աշխատանքի բարձր արտադրողականության։ Հենց այդ առաջավորների փորձի բազմակողմանի ուսումնասիրության և արմատավորման ճանապարհով կարելի է ետ



մնացող բանվորներին հասցնել առաջավորներին, ստեղծել արդյունաբերության նոր վերելք։

Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցները միահամուռ ընդունեցին դիմում՝ ուղղված Սովետական Միության բանվորներին ու բանվորուհիներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին ու ծառայողներին։ Իրենց դիմումում նրանք կոչ են անում ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ հինգերորդ հնգամյակի առաջադրանքները և 1955 թվականի պետական պլանը ժամկետից շուտ կատարելու համար։

Դրան կարելի է հասնել ամենուրեք, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկան լավագույն օգտագործելու, սարքավորման մեկ միավորից և արտադրական տարածության յուրաքանչյուր քառակուսի մետրից արտադրանքի թողարկումն ավելացնելու, խնայողության ռեժիմի կիրառման, արտադրանքի որակի բարելավման և դրա ինքնարժեքի իջեցման համար։

---

# ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆՔ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՀԱՄԱՐ

Սպիտակի շրջանի Ջիգդամալի Մոլոտովի անվան կոլտնտեսության № 2 բրիգադայի բրիգադիր Ս. Մխիթարյանի պատմածը:

*Անցյալ տարի մեր բրիգադան շաքարի ճակնդեղի բարձր բերք ստացավ։ Բրիգադային ամրացված 12 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմեց 450 ցենտներ, նախատեսված 245 ցենտների դիմաց, իսկ առանձին օղակներ, ինչպես օրինակ, Նինա Պետրոսյանի օղակը, հեկտարից ստացան ավելի քան 556 ցենտներ ճակնդեղ։*

*Ինչպե՞ս ստացաք ճակնդեղի բարձր բերք՝ հաճախ հարցնում են մեզանից։ Այդ հարցին ճիշտ պատասխան տալու համար պետք է պատմել այն խելացի ու մտածված աշխատանքի մասին, որ ամեն տարի կատարում են մեր կոլտնտեսականները դաշտում։*

*Ճակնդեղը արժեքավոր արմատապտուղ է, որը թեպետ մշակվում է կլիմայական*



*բոլոր գոտիներում, բայց պահանջում է հոգատար խնամք։ Ճակնդեղը սիրում է օդաթափանցիկ, ջրաթափանցիկ, փուխր և մոլախոտերից ազատ հողեր։ Այդ լավ գիտեն նաև մեր բրիգադայի անդամները։ Ուստի նրանք հատուկ ուշադրություն են դարձնում հողի նախացանքային մշակության վրա։ Իբրև կանոն, ամեն տարի մենք ճակնդեղի հողը հերկում ենք աշնանը, այն էլ 25 սմ. խորությամբ։ Հողի աշնանային հերկի առավելությունն այն է, որ խոնավությունը հողում լավ է պահպանվում, որը և նպաստում է սերմերի հաջող ծլմանն ու հետագայում բույսերի փարթամ աճմանը։ Աշնանային հերկից հետո, վաղ գարնանը կատարում ենք կրկնահերկ, փոցխում և հողը պատրաստում ենք ցանքի համար։ Ցանքը կատարում ենք հատուկ շարքացանի միջոցով, այն հաշվով, որ շարքը շարքից ունենա 44 սմ., իսկ բույսը-բույսից՝ 12—15 սմ. հեռավորություն։ Ստեղծելով նպաստավոր պայմաններ, ճակնդեղի սերմերը 6—8 օրում ծլում են։ Ճակնդեղի ծիլերը երևալուց 3—5 օր հետո կատարում ենք միջշարքային տարածությունների առաջին փխրեցում և քաղհան։ Առաջին փխրեցումից 10—15 օր հետո, այսինքն այն ժամանակ,*

երբ բույսերն ունենում են 2—3 տերև, կատարում ենք առաջին նոսրացումը, իսկ 20—25 օր հետո կատարում ենք երկրորդ նոսրացումը և ապա փխրեցում։ Ճակնդեղի տերևվակալելուց մինչև բերքահավաքը ամենաքիչը կատարում ենք 2—3 փխրեցում և նույնքան անգամ էլ քաղհան։

Ճակնդեղի բարձր բերք ստանալու համար խիստ կարևոր նշանակություն ունի հողի պարարտացումը քիմիական և տեղական պարարտանյութերով։

Գյուղատնտեսության առաջավորների փորձով ապացուցված է, որ պարարտացումը պետք է կատարվի ոչ թե միանգամից, այլ հողի մշակության տարբեր ժամանակաշըրջանում։ Մենք հենց այդպես էլ կատարում ենք ճակնդեղի պլանտացիաների պարարտացումը։ Սկզբում հողը պարարտացնում ենք աշնանը, ցրտահերկի ժամանակ, իսկ հետո՝ գարնանը, ցանք կատարելու ընթացքում, շարքացանի միջոցով։ Ճակնդեղի պլանտացիաները մենք պարարտացնում ենք նաև կուլտիվացիա կատարելիս։ Այսպիսով ճակնդեղը իր աճման շրջանում սիստեմատիկաբար ստանալով անհրաժեշտ սննդանյութ, սկսում է փարթամորեն աճել և առատ բերք տալ։



Ճակնդեղի բարձր բերք ստանալուն շատ է նպաստում ոռոգման աշխատանքները ճիշտ և ժամանակին կազմակերպելը։ Մեր բրիգադան ճակնդեղի պլանտացիաները ոռոգում է ըստ հողի պահանջի, միջին հաշվով 10—12 անգամ։ Ոռոգելիս ջրի հետ մենք խառնում ենք տեղական կամ քիմիական պարարտանյութ, հատկապես թռչնաղբ։ Մենք ճակնդեղի պլանտացիաները ոռոգում ենք ակոսային եղանակով, որը աշխատանքի առաջավոր մեթոդ է և շատ է նպաստում բերքատվության բարձրացմանը։

Ճակնդեղի պլանտացիաների մշակությանը զուգընթաց, բրիգադայում ամեն տարի հետևողական պայքար է կազմակերպվում վնասատուների դեմ, հատկապես թրթուրների դեմ, որոնք կարճ ժամանակում ոչնչացնում են ճակնդեղի տերևները։ Թրթուրների դեմ պայքարի լավագույն միջոց է բոլորին հայտնի ԴԴՏ-ն։ Քիմիական այդ նյութով, անցյալ տարի, մենք լրիվ բուժեցինք ճակընդեղի ամբողջ տարածությունը, այն էլ մեկ—երկու օրում։ Այս տարի, դեռ մինչև այժմ, թրթուրներ չեն նկատվել, բայց մենք լիովին պատրաստ ենք գյուղատնտեսության այդ վնասատուի դեմ պայքարելու համար։

Անցյալ գյուղատնտեսական տարում, երբ

մենք նվաճեցինք ճակնդեղի բարձր բերք, դրան մեծ չափով նպաստեց այն հանգամանքը, որ բերքը հավաքեցինք ժամանակին և առանց կորստի, մինչև ցրտերի ընկնելը, նախատեսված ժամկետից 7 օր շուտ։ Պետք է հիշել, որ ճակնդեղը ցրտադիմացկուն չէ և 2 աստիճան ցրտերը վտանգավոր են, հետևաբար այն պետք է հավաքել ճիշտ ժամանակին։

Ճակնդեղի բարձր բերք ստանալու գործում խոշոր նշանակություն ունեցավ աշխատանքի դրական փորձի փոխանակումը։ Բրիգադայի ճակնդեղագործները այցելեցին Սարահարթ գյուղի Չկալովի անվան կոլտնտեսությունը։ Այնտեղ նրանք ծանոթացան անվանի ճակընդեղագործ, Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ, Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից Արևհատ Բարիկյանի օղակի աշխատանքներին։ Նրա ղեկավարած օղակը 6 տարիների ընթացքում անընդհատ բարձրացրել է ճակնդեղի բերքատվությունը՝ 120 ցենտներից հասցնելով 500 ցենտների։

Անընդհատ բարելավելով ճակնդեղի մշակությունը, արմատավորելով առաջավոր փորձը կոլտնտեսային արտադրության մեջ, բրիգադան պայքարում է ընթացիկ տարում ստանալ ճակնդեղի ավելի բարձր բերք։

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԻՆՉՊԵՍ ԵՄ ԱՆՑԿԱՑՆՈՒՄ ԶՐՈՒՅՑԸ

Հ. ԹԵԼՈՒՄՅԱՆ
Երևանի Կիրովի անվան գործարանի ագիտատոր

Յուրաքանչյուր ագիտատոր, որը ձգտում է հետաքրքիր և բովանդակալից ագիտացիոն զրույցներ ունենալ իր ունկնդիրների հետ, ամենից առաջ պետք է կատարի թեմայի նպատակային և ճիշտ ընտրություն։ Ագիտատորին մտահոգող երկրորդ հարցը պետք է լինի այն, թե ագիտացիայի միջոցով ինչպես հասնել կոնկրետ արդյունքի։ Հաշվի առնելով այդ հանգամանքը, Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումը մասսայականացնելիս, ես իմ ուշադրությունը կենտրոնացրի արտադրության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումները և առաջավոր փորձը արմատավորելու կարևոր հարցերի վրա, կապելով դրանք մեր գործարանի և

հենց ունկնդիրների առջև դրված առաջնահերթ խնդիրների հետ։

Երբ ձեռքիս տակ կուտակվեցին հարուստ փաստական նյութեր, դիդակտիկ պարագաներ և աշխատանքային կենդանի օրինակներ ու թվական տվյալներ մեր ցեխի ու գործարանի վերաբերյալ, ես ունկնդիրներին տեղյակ պահեցի առաջիկա զրույցի մասին։ Զրույցի սկզբում ունկնդիրներին համառոտակի բացատրեցի ծանր արդյունաբերության այն կարևոր դերի մասին, որ նա ունի մեր ժողովրդական տնտեսության մեջ։ Առանց ծանր ինդուստրիայի,— ասացի ես,— մենք չենք կարող զարգացնել մեր գյուղատնտեսությունը, մենք չենք կարող մեզ ապահով զգալ կապիտալիստական շրջապատում, մենք չենք կարող հասնել բարձր արտադրողականության ու ժողովրդի օր-օրի աճող պահանջմունքների լի ու լի բավարարման։

Մենք պարտական ենք ծանր արդյունաբերությանը, որը մեր երկրի ժողովրդական տնտեսությանը տվել է տասնյակ հազարավոր ամենաճշգրիտ գործիքներ, բազմազան ու բարդ կառուցվածք ունեցող մեքենաներ, որոնք օգտագործվում են մեր գործարաններում ու համայնական դաշտերում և ամեն օր բարիք են տալիս սովետական ժողովրդին։



1955 թվականին,— դիմելով փաստերին, ասացի ես,—արդյունաբերական արտադրանքի թողարկումը մեր երկրում 1950 թվականի մակարդակը կգերազանցի 80 տոկոսով, իսկ նախապատերազմյան մակարդակը՝ ավելի քան երեք անգամ։ Իսկ այդ նշանակում է, որ մեր արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը կհագենան նոր, ավելի գերհզոր մեքենաներով, կավելանա արտադրանքի թողարկումը, համեմատական չափով կիջնի ինքնարժեքը, կտեղծվի մթերքների առատություն և է՛լ ավելի կբարելավվեն աշխատավորների նյութական-կենցաղային պայմանները։

Իմ առաջ քաշած հարցերը ավելի կոնկրետ ու ավելի տպավորիչ դարձնելու նպատակով, զրույցի ընթացքում ես ունկնդիրների ուշադրությունը բևեռեցի Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների դիմումի այն մասի վրա, որը վերաբերվում է մեզ՝ քիմիական արդյունաբերության աշխատողներիս։ Խորհրդակցության մասնակիցների կողմից կազմված դիմումը մեզ կոչ է անում, ավելի արագորեն ընդլայնել քիմիական արտադրանքի նոր տեսակների արտադրությունը, բարձրացնել նրանց որակը, հաստատա-

կամորեն արտադրության մեջ արմատավորել գիտության և առաջավոր փորձի նվաճումները, ավելի համարձակորեն ավտոմատացնել արտադրական պրոցեսները. կաուչուկ, սինթետիկ ճարպեր և այլ քիմիկատներ արտադրելու համար լիովին օգտագործել վերամշակման ենթակա նյութերը, ամեն կերպ նպաստել թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանն ու ինքնարժեքի իջեցմանը։

Այդ ամենին հասնելու համար ունկնդիրներին մանրամասնորեն պարզաբանեցի, որ մեր գործարանում և այն ցեխում, ուր իրենք են աշխատում, ինչպիսի՞ անսպառ հնարավորություններ կան այդ ուղղությամբ. ապա նրանց տեղյակ պահեցի այն մասին, թե ինչպես մեր գործարանի կոլեկտիվը, կատարելով սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, 1955 թվականի առաջին եռամսյակի ընթացքում կարողացավ հինգ տոկոսով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, երեք տոկոսով իջեցնել արտադրանքի ինքնարժեքը և եռամսյակային պլանը կատարելով 104,3 տոկոսով՝ արժանացավ համամիութենական երկրորդ մրցանակի ու 169 հազար ռուբլի դրամական պարգևի։



Որպեսզի զրույցը դառնար ավելի համոզիչ և ունկնդիրներին օգնող, նրանց պատմեցի մեր գործարանի սոցմրցության առաջավորների աշխատանքի դրական փորձի մասին։

Եթե ուզում եք,— ասացի նրանց,— որ մեր ցեխը գործարանի մասշտաբով դառնա առաջավոր, ապա անհրաժեշտ է հետևել 1—8 ցեխում աշխատող Բ. Մուրադյանի, Կ. Կանանյանի, Ջ. Առաքելյանի օրինակին, որոնք իրենց նորարարական առաջարկությամբ զգալի չափով ավելացրել են ագրեգատների արտադրողականությունը։ Նրանց առաջարկության ներդրմամբ գործարանն ստացել է հարյուր-հազարավոր ռուբլիների օգուտ։ Գործարանին մեծ օգուտ են տվել նաև Կ. Հովհաննիսյանի, Ա. Ղարիբյանի, Վ. Ռամկովի նորարարական առաջարկությունները։ Բավական է ասել, որ միայն 1955 թվականի անցած չորս ամսում գործարանում ներդրվել է 230 առաջարկություն, որի տնտեսական օգուտը տարեկան կազմում է մեկ միլիոն ռուբլի։ Մինչև տարվա վերջը նորարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումից, նախատեսված պլանի համաձայն, գործարանը կստանա 5 միլիոն ռուբլու օգուտ։

Ջրուցի ընթացքում, դրական փաստերի կողքին, ես միաժամանակ բացահայտեցի այն թերությունները, որոնք գոյություն ունեն գործարանում և մեր ցեխում։ Ջրույցի այդ մասը ունկնդիրներին հնարավորություն տվեց, որ իրենք խոսեն իրենց թերությունների մասին։ Հատկապես ուժեղ քննադատության ենթարկվեցին ապարատավարներ Վ. Հովհաննիսյանը, Մ. Խաչատրյանը և Բ. Նահապետյանը։ Ունկնդիրներ Ս. Մատինյանը և Ա. Ավետիսյանը, մեջ բերելով Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցությունում ընկ. Ն. Ս. Խրուշչևի արտասանած ճառից որոշ հատվածներ, խելացի առաջարկություններ արեցին աշխատանքի ռացիոնալ կազմակերպման վերաբերյալ։

Ջրույցը ուսանելի շատ բան տվեց։ Քննադատված ապարատավարներն ու պլանները թերակատարող մյուս ընկերները խոսք տվեցին վերացնել թերությունները և այսուհետև աշխատել ավելի լավ։ Ջրույցի բոլոր մասնակիցները, արձագանքելով Արդյունաբերության աշխատողների համամիութենական խորհրդակցության մասնակիցների կոչին, պարտավորվեցին 1955 թվականի տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 5-ին, երկրին տալով գերազանց որակի արտադրանք։

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

## «ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՔԵՆԱՅԱՑՈՒՄՆ ՈՒ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ» ՊԱՎԻԼԻՈՆՈՒՄ

Վլադիմիր Իլյիչ Լենինը սովորեցնում էր, որ սոցիալիզմի միակ նյութական բազան կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ընդունակ է վերակառուցելու նաև հողագործությունը։ Իրագործելով լենինյան պատգամները, Կոմունիստական պարտիան, ամբողջ սովետական ժողովուրդը մեր երկիրը դարձրին հզոր ինդուստրիալ տերություն՝ մեքենայացված խոշոր գյուղատնտեսությամբ։

Սովետական պետության ինդուստրիալ հզորության բազայի վրա անընդհատ աճում է ՄՏ կայանների և սովխոզների տեխնիկական հագեցվածությունը։ Դրա վառ վկայությունն է այն բազմազան տեխնիկան, որ լայնորեն ներկայացված է «Գյուղատնտեսության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը» պավիլիոնում։ Այստեղ իր ամբողջ վեհությամբ երևում է ոչ միայն գյուղատնտ-

տեսական տեխնիկայի քանակական աճը, այլև նրա որակական փոփոխությունները։

1940 թվականին մեր արդյունաբերությունն արտադրում էր վեց տեսակի տրակտորներ, իսկ այժմ արտադրում է տասնվեց տեսակի տրակտորներ։ Տեսակների թվին են պատկանում «Ս—80», «ԴՏ—54» հզոր տրակտորները, որոնք լայնորեն օգտագործվում են խամ ու խոպան հողերի մշակման համար։

Ունիվերսալ «Բելոռուս», «ԽՏԶ—7» և «Ունիվերսալ» անվավոր տրակտորները, «ԿԴՊ—35» և «ԿԴ—35» թրթուրավոր տրակտորները թողարկվում են մեքենաների կախովի սիստեմով, որը մեծ տնտեսում է տալիս և նպաստում է աշխատանքի արտադրողականության զգալի բարձրացմանը։ Կախովի մեքենաների թվում են՝ գութաններ, սկավառակային փոցխեր, շարքացաններ, տնկող մեքենաներ, խոտհնձիչներ, խուրձկապիչներ և այլն։

Գյուղատնտեսության մեջ ավելի ու ավելի լայն կիրառում է ստանում էլեկտրականությունը։ Մի շարք ՄՏ կայաններում կան էլեկտրատրակտորներ։ Դրանց շահագործման փորձը ցույց է տալիս, որ էլեկտրատրակտորները խիստ շահեկան մեքենաներ



են։ Բավական է ասել, որ յուրաքանչյուր էլեկտրատրակտոր տարեկան տալիս է առնվազն 20 տոննա հեղուկ վառելանյութի տնտեսում։

1954 թվականին գյուղական էլեկտրակայանների հզորությունը, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ հինգ անգամ։ Այնպիսի խոշոր հիդրոէլեկտրակայանների գործարկումից հետո, ինչպիսիք են Ցեմլյանսկի, Ուստ-Կամենոգորսկի, Կամայի և այլ հիդրոէլեկտրակայանները, վիթխարի հնարավորություններ կստեղծվեն էլեկտրաէներգիան գյուղատնտեսության մեջ ավելի լայնորեն կիրառելու համար։

Հողերը օրգանական և հանքային պարարտանյութերով պարարտացնելու համար ստեղծվել է մեքենաների մի ամբողջ սիստեմ։ Մեքենաների լայն օգտագործումը կոլտնտեսություններին և սովխոզներին հնարավորություն կտա առնվազն 20—30 անգամ կրճատել այն աշխատանքը, որ գործադրվում էր պարարտացման վրա։

Հացահատիկային և գյուղատնտեսական այլ կուլտուրաների ցանքի պրոգրեսիվ եղանակները անհրաժեշտ դարձրին փոխել որոշ մեքենաների կոնստրուկցիան։ Այժմ «ՍՈՒԲ—48», «ՍԱ—48բ» նեղշար շարքա-

*ցանները ապահովում են հասկավոր հացահատիկային կուլտուրաների ցանքի կատարումը՝ 7—8 սանտիմետր միջշարային տարածությամբ։ Այդ շարքացանները սերմը ցանում են հավասարաչափ, որով և նպաստում են բերքատվության բարձրացմանը։ «ՍԿ—24» կոմբինացված շարքացանը սերմերը ցանելու հետ միաժամանակ հողը պարարտացնում է գրանուլացված պարարտանյութերով։ Գյուղատնտեսական մեքենաշինության գործարանները արտադրում են մեծ քանակությամբ «ՍՏՁ—47» հացահատիկային շարքացաններ։ Այդ շարքացանների օգնությամբ կարելի է հացահատիկային կուլտուրաների սերմերը և խոտաբույսերի սերմերը ցանել միատեղ։ Քառակուսի-բնային ցանք կատարող «ՍԿԳ—6» շարքացանը, որն աշխատում է չափալարով, սերմերը ճշտորեն ցանում է քառակուսիների անկյուններում։ Այդ մեքենայի ստեղծումը արագացրեց շարահերկ հացահատիկային կուլտուրաների քառակուսի-բնային ցանքի նոր, չափազանց արդյունավետ եղանակի արմատավորումը արտադրության մեջ։*

*ՍՍՌՄ-ում համարյա լրիվին մեքենայացված է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, որը կատարվում է «Ստալի-*



*նեց—6» կցորդ և «Ս—4» ինքնագնաց կոմբայններով։ 1954 թվականի բերքահավաքի սկզբին այդ կոմբայնների քանակը գյուղատնտեսության մեջ հասավ ավելի քան 350 հազարի։ Հայրենական արդյունաբերությունը յուրացրել է է՛լ ավելի հզոր «Ստալինեց—8» կոմբայնների արտադրությունը և ստեղծել «Ս—4պ» կիսաթրթուրավոր ինքնագնաց կոմբայնը։ Վերջինս ունի այնպիսի հարմարանքներ, որ բերքահավաքի համար կարող է օգտագործվել մեծ խոնավություն ունեցող շրջաններում։ Պավիլոնի հատուկ հրապարակում այցելուները մեծ հետաքրքրությամբ դիտում են նաև եգիպտացորենի բերքհավաք մեքենան, որը միաժամանակ կտրում է եգիպտացորենի ցողունը, անջատում է հատիկները ու դրանք հավաքում բունկերի մեջ և մանրացնում է կանաչ զանգվածը՝ սիլոսի համար։ Այդ մեքենան կատարում է 25—30 մարդու աշխատանք։*

*Մեծ առաջադիմություն է կատարել նաև կերերի արտադրության տեխնիկան։ «Գյուղատնտեսության մեքենայացումն ու էլեկտրիֆիկացումը» պավիլիոնում ցուցադրված են 8 տիպի խոտհնձիչներ։ Տրակտորային կախովի ու կցորդ ինքնագնաց խոտհնձիչների ընդգրկման լայնությունը հասնում է*

2,1-ից մինչև 14,6 մետրի։ Դրանց արտադրողականությունն է՝ ժամում 1—7 հեկտար։ Այդ մեքենաների հետևից խոտը հավաքելու համար օգտագործվում են մինչև 14 մետր երկարություն ունեցող փոցխեր։ Դիզող մեքենաները խոտը բարդոցում և դիզում են 6—7 մետր բարձրությամբ։ Խոտհնձիչ մեքենաների լրիվ կոմպլեքսի կիրառումը հնարավորություն է տալիս տասնյակ անգամ կրճատել խոտհնձի վրա թափվող աշխատանքը։

Կերի ռացիոնի մեջ մեծ դեր է խաղում սիլոսը։ Սիլոսի «ՍԿ—2,6» բերքահավաք նոր մեքենան սիլոսային կուլտուրաների ցողունները կտրում է մինչև 4 մետր բարձրությամբ, մանրացնում է դրանք և պատրաստում լավորակ սիլոսային մասսա։ Նրա արտադրողականությունն է՝ ժամում 50—70 տոննա։ Կարտոֆիլը սիլոսացնելու համար շատ տնտեսություններում հաջողությամբ օգտագործվում են կերապատրաստման ագրեգատները, արմատա-պալարապտուղ մաքրող, կերերը գոլորշիով փափկացնող մեքենաները, որոնց նմուշները ցուցադրված են պավիլոնում։

Անասնաբուծական ֆերմաների մեքենայացումը խիստ կրճատում է աշխատանքի ծախսումը, բարելավում է կենդանիների



պահպանման պայմանները, նպաստում է նրանց մթերատվության բարձրացմանը։ Օրինակ՝ միայն մեքենայացված ջրամատակարարումը՝ ջրման ավտոմատ սարքերով, հոտի մթերատվությունը բարձրացնում է 10—12 տոկոսով։ Մեծ արդյունք է տալիս մեքենայացված կերապատրաստումը։ Ունիվերսալ մեքենան մանրացնում է հացահատիկը, քուսպը, խոտը, ծղոտը։ Նա մեկ ժամում մանրացնում է 420-ից մինչև 700 կիլոգրամ զանազան կերեր։ Այժմ շատ ֆերմաներում եղած կթիչ սարքերը խոշոր չափով թեթևացրին կթվորուհիների աշխատանքը։ Շարժական սարքը, որ բաղկացած է տասը ապարատից և սպասարկվում է երեք կթվորուհու ու մեկ մեխանիկի կողմից, օրական կարող է կթել 100 կով։ Ոչխարների էլեկտրամեխանիկական խուզը աշխատանքի արտադրողականությունը բարձրացնում է 4—5 անգամ։

Տորֆահումուսային թաղարներում բանջարանոցային սածիլների տնկումը կատարվում է «ՍՌՆ—4» մեքենայով՝ ուղիղ քառակուսիների անկյուններում։ Գոյություն ունի մի հատուկ շարքացան՝ սոխ ցանելու համար։ «ԿՌՆ—2,8» բուսասնուցիչ-կուլտիվատորի առկայությունը հնարավորություն է

տալիս կուլտիվացիայի հետ միաժամանակ կատարել բանջարանոցային կուլտուրաների սնուցումը։ Ստեղծվել է բարձր արտադրողականություն ունեցող հատուկ մեքենա՝ տորֆահումուսային թաղարներ պատրաստելու համար։ Այդ մեքենայով օրական կարելի է պատրաստել 50—90 հազար թաղար։ Բանջարանոցային ցանքերի ջրման համար օգտագործվում է «ԴԴՊ—30Ս» հեռաշիթ անձրևող սարքը։ Կոլտնտեսային և սովխոզային դաշտերում աշխատում են կաղամբի առաջին բերքահավաք մեքենաները։ Ստեղծվել է շաքարի ճակնդեղի մշակության մեքենաների մի կոմպլեքս։ Ճակնդեղի բերքահավաքը, որը ամենածանր և աշխատատար պրոցես է, կատարվում է «ՍԿԵՄ—3» կոմբայնով։ Արմատները ավտոմեքենաների մեջ են բարձվում մեխանիկական թիերի և հատուկ տրանսպորտյորների միջոցով։

Բամբակացան շրջանների կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են բամբակի հազարավոր բերքահավաք մեքենաներ։ Ստեղծվել է մի նոր՝ պարարտացնող կուլտիվատոր և շարքացան՝ քամբակի քառակուսի ցանքի համար։

Մեր երկրում մեծ ուշադրություն է դարձվում գյուղատնտեսական բույսերի վնասա-



տուների և հիվանդությունների դեմ մղվող պայքարին։ ՄՏ կայանները և սովխոզները հագեցված են նոր մեքենաներով՝ փոշոտիչներով, սրսկիչներով, կախովի և կցորդ ծխամոտորներով։ Նույն այդ նպատակով լայնորեն օգտագործվում է գյուղատնտեսական ավիացիան։

Մեծ են սովետական ժողովրդի նվաճումները գյուղատնտեսության տեխնիկական վերակառուցման գործում։ ՄՏ կայաններում կենտրոնացված գյուղատնտեսական բարդ տեխնիկան հանդիսանում է կոլտնտեսային կարգի ինդուստրիալ նյութա-տեխնիկական բազան, իսկ իրենք՝ ՄՏ կայանները այն կարևորագույն հենակետերն են, որոնց միջոցով սոցիալիստական պետությունը իրականացնում է իր ղեկավարությունը կոլտնտեսությունների նկատմամբ։

---

# ԵՐԵՎԱՆԻ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐՈՒՄ

(Թվեր և փաստեր)

Սովետական իշխանության տարիներին միանգամայն փոխվեց մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանի տեսքը։ Պատմական կարճ ժամկետում Երևանը դարձավ ռեսպուբլիկայի արդյունաբերության, գիտության և կուլտուրայի կենտրոնը։

★ Ինչպես անցյալ հնգամյակներում, այնպես էլ այժմ, Երևանում բուռն թափով զարգանում է ծանր արդյունաբերությունը։ Առաջիկա տարիներին մետաղաձուլական, չուգունաձուլական, ռադիոընդունիչների (տարեկան 100 հազար հատ), շինանյութերի, մեխանիկական, թեթև, սննդի և տեղական արդյունաբերության բազմաթիվ նոր գործարաններ են կառուցվելու մայրաքաղաքում։

★ Տարեցտարի ընդարձակվում են գործող արդյունաբերական ձեռնարկությունները։ Միայն Հայէլեկտրագործարանը այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացնելու է 60 տոկոսով, իսկ հաջորդ հնգամյակին, այժմյան համեմատությամբ, 4 անգամ ավելի արտադրանք է տալու։



★ Արդյունաբերության արագ զարգացումը նպաստեց մայրաքաղաքի բնակչության աճին և ավելացրեց շինարարության ծավալը։ Բնակչության աճի, շինարարության ծավալի տեսակետից Երևանը այս տարի հասել է այն մակարդակին, ինչ նախատեսված էր 1965 թվականի համար։

★ Վերջին 4 տարիների ընթացքում Երևանում կառուցվել և շահագործման է հանձնվել 90 հազար 227 քառակուսի մետր բնակելի տարածություն։ 1955 թվականին կառուցվելու է 38 հազար 965 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Եկող տարվանից բնակելի շինարարության վրա ներդրվելու են 2 անգամ ավելի միջոցներ, քան անցյալ տարիներին։ Միջին հաշվով ամեն տարի շահագործման է հանձնվում 5—6 դպրոցական շենք և հասարակական շատ օբյեկտներ։

★ Այգեստանում կառուցվում է Պետական համալսարանի նոր շենքը։ Շուտով կավարտվի ռադիոյի տան շինարարությունը։ Տերյան փողոցի վրա կառուցվում է Պոլիտեխնիկ ինստիտուտի նոր, գեղեցիկ շենքը։ Շարունակվում է Բժշկական և Գյուղատնտեսական ինստիտուտների ուսումնական կորպուսների շինարարությունը։ Կալինինի փողոցի վրա կառուցվում են ֆինանսական տեխնիկումի, իսկ Մոսկովյան փողոցի վրա՝ Երաժշտական դպրոցի նոր շենքերը։

★ Բաղրամյան փողոցի վրա ավարտվում են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության և Գիտությունների ակադեմիայի նոր շենքերի շինարարական աշխատանքները։ Լենինի հրապարակի վրա ավարտվում է Պրոֆմիությունների տան և հյուրանոցի շինարարությունը։ Սկսված է և արագ թափով առաջ է գնում Կապի տան վերակառուցումը։ Ստալինյան պողոտայի վերին մասում շուտով կավարտվի Մատենադարանի շենքի շինարարությունը։ Այժմ քաղաքի տարբեր մասերում կառուցվում են հասարակական, կուլտուրական և առողջապահական շատ օբյեկտներ։

Այս տարի կավարտվի և շահագործման կհանձնվի Երևանի կայարանի նոր շենքը։

★ Պարտիայի և կառավարության հոգատարությամբ ամեն ինչ արվում է սովետական մարդու պահանջմունքները բավարարելու համար։ 1920 թվականի համեմատությամբ Երևանում խմելու ջուրն ավելացել է 140 անգամ։ Սովետական իշխանության տարիներին կառուցվել են 230 կիլոմետր ջրմուղու և 90 կիլոմետր կոյուղու գծեր։ Նախատեսվում է քաղաքի 70 տոկոսն ապահովել կոյուղու գծերով։ Այդ նպատակի համար ծախսվելու է 47 միլիոն ռուբլի։

★ Քաղաքի հարավային մասում, Թամանյան փողոցի երկարությամբ Հրազդան գետի վրա կառուցվելու է 22 մետր բարձրությամբ ջրապատնեշ, որով կառաջանա մի լիճ՝ 75 հեկտար մակերեսով։ Եկող տարվանից սկսվելու է «Հաղթանակ» այգում ստեղծվող լճի շինա-



րարությունը։ Լիճը զբաղեցնելու է 1,5 հեկտար տարածություն և ունենալու է առանձին լողարան և բազմաթիվ շատրվաններ։

★ Երևանի բնակչությանը սպասարկող էլեկտրագծերի երկարությունը հասնում է 520 կիլոմետրի։ Քաղաքի ամեն մի բնակիչ տարեկան ծախսում է 125 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ Եթե դրան ավելացնենք կոմունալ նպատակներին ծախսած էլեկտրաէներգիան (տրանսպորտ, բաղնիք, ջրմուղ, շատրվաններ, փողոցային լուսավորություն), ապա յուրաքանչյուր շնչին ընկնում է 200 կիլովատ-ժամ էներգիա, որին կարող են նախանձել Եվրոպայի շատ խոշոր քաղաքների բնակիչներ։

★ Բնակչության առողջության պահպանման գործին լուրջ կերպով նպաստում է քաղաքի ծառա-կանաչապատումը, որը լայն զարգացում է գտել Երևանում սոցիալիստական շինարարության տարիներին։ Ներկայումս քաղաքի տերիտորիայի 30 տոկոսը ծառապատված է ու կանաչապատված։ Քաղաքի հյուսիս-արևելյան և արևմտյան լեռնալանջերը պատված են խիտ անտառաշերտով։ Մինչև 1960 թվականը քաղաքի ծառապատումը և կանաչապատումը հասցվելու է 40 տոկոսի։ Միկոյանի շրջանում, Հրազդան գետի երկու ափերը 6 կիլոմետր տարածությամբ ծառապատվելու է։ Գետի աջ ափին՝ Ծիծեռնակաբերդում 150 հեկտարի վրա տնկված են զանազան տեսակի դեկորատիվ ծառեր։

★ *Հետպատերազմյան տարիներին մեծ չափերով աճել է քաղաքի տրանսպորտը՝ տրամվայ, տրոլեյբուս, ավտոբուս, տակսի և այլն։ Տրամվայի գծերի երկարությունը կազմում է 46 կիլոմետր, իսկ տրոլեյբուսինը՝ 40 կիլոմետր։ Եկող տարի շահագործման կհանձնվեն Բաղրամյան—Միկոյան և Բաղրամյան-Շահումյան փողոցները գնացող տրամվայի նոր գծերը։ Առաջիկա 2—3 տարվա ընթացքում կավարտվի կայարան—Արտաշատի խճուղի, Թամանյան փողոցից մինչև Օրջոնիկիձեի պողոտան կառուցվող տրամվայ-տրոլեյբուսի գծերի շինարարությունը։*

★ *Առաջիկա տարիներին քաղաքի մի շարք վայրերում բացվելու են նոր կինո-թատրոններ։ Նախատեսվում է կառուցել Գ. Սունդուկյանի անվան պետական թատրոնի նոր շենք, 2 ֆիզկուլտ ստադիոններ և այլն։*

★ *Այս տարի հեռախոսային ցանցն ավելանալու է 2 հազար կետով, իսկ եկող տարի՝ 3 հազար կետով, որից 2 հազար կետ՝ Ստալինյան և հազար կետ՝ Միկոյանի շրջաններում։*

---

## СОДЕРЖАНИЕ

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ИЗ ОПЫТА ПЕРЕДОВИКОВ



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



### НА ВСЕСОЮЗНОЙ СЕЛЬСКОХОЗЯЙСТВЕННОЙ ВЫСТАВКЕ



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

